## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78:

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 2
ՀՈՒՆՎԱՐ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԻՆՉԻ՞ ՀԱՄԱՐ Է ՊԱՅՔԱՐԵԼՈՒ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ ԱՅՍ ՏԱՐԻ ԵՎ ԵԿՈՂ ՏԱՐԻ

## 1. ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարը մեր ռեսպուբլիկայի աշխատավորների կյանքում խոշորագույն իրադարձություն էր: Այն տեղի ունեցավ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումների առաջացրած չտեսնված ոգևորության և խանդավառության պայմաններում: Համագումարը, հանրագումարի բերելով անցած երկու տարում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության նվաճումները, նշելով եղած թերությունները վերացնելու ուղիները, գործարար մթնոլորտում քննարկեց պարտիական կազմակերպությունների հերթական խնդիրները: Համագումարը կոնկրետ որոշում ընդունեց առաջիկա երկու տարում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման վերաբերյալ, որին և նվիրված է մեր այս զրույցը:*

*Առաջիկա երկու տարում, 1964—1965 թվականներին, ավելի կծաղկի ու կբարգավաճի Սովետական Հայաստանը: Այդ երկու տարվա ընթացքում արդյունաբերության արտադրանքի թողարկումը կավելանա 26 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը միայն այս տարի կաճի 3 տոկոսով, իսկ եկող տարի՝ 7,1 տոկոսով: Նույն ժամանակամիջոցում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը համապատասխանաբար կիջեցվի 2,1 և 1,4 տոկոսով:*

Այս տարի և եկող տարի մեր ռեսպուբլիկայում բուռն թափով կզարգանա քիմիական արդյունաբերությունը։ Կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1963 թ.) որոշումները՝ Սովետական Հայաստանի քիմիական արդյունաբերության աշխատողները մեծ չափերով կավելացնեն քիմիական արտադրանքի թողարկումը և կյուրացնեն քիմիական նյութերի շատ կարևոր նոր տեսակներ։ Օրինակ, 1964—1965 թվականներին, անցյալ տարվա համեմատությամբ, քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը կաճի մեկուկես անգամ։ Այնպիսի արժեքավոր քիմիական նյութեր, ինչ-




պիսիք են պլաստմասսաները և սինթետիկ ձյութերը, ավելի շատ կարտադրվեն, նրանց արտադրությունը կաճի 3,8 անգամ, ծծմբաթթվինը՝ 3,6 անգամ։ Նախատեսված է ավելացնել նաև ապակեպլաստիկների, ամոնիակի, կարբամիդի, կրոտիլինի և քիմիական այլ արժեքավոր նյութերի արտադրությունը։

ՀԿԿ XXIII համագումարում ընկ. Յա. Ն. Զարոբյանը, հանգամանորեն խոսելով ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման գլխավոր ուղղությունների և կարևորագույն խնդիրների մասին, նշեց, թե ինչպես մոտակա 2—3 տարում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության մեջ տեղի կունենան որակական կարևորագույն փոփոխություններ։ Այդ նպատակով առաջիկայում Կիրովի անվան գործարանում և Կիրովականի քիմկոմբինատում ամոնիակի արտադրությունը լիովին փոխադրվելու է բնական գազի հիմքի վրա, որը նոր և լայն





ՍԵՎԱՆԱ ԼՃԻ ՋՐԵՐԸ ՊԱՀՊԱՆՎԵԼՈՒ ԵՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՎՐԱ

1 ՄԻԼԻԱՐԴ 300 ՄԻԼԻՈՆ ԽՈՐ. ՄԵՏՐ

970 ՄԻԼԻՈՆ ԽՈՐ. ՄԵՏՐ

800 ՄԻԼԻՈՆ ԽՈՐ. ՄԵՏՐԻ

500 ՄԻԼԻՈՆ ԽՈՐ. ՄԵՏՐԻ

ԼՃԻՑ ԲԱՑ Է ԹՈՂՆՎԵԼ

ՋՐԻ ԹՈՂՔԸ ԿՀԱՍՑՎԻ

ՋՐԻ ԹՈՂՔԸ ԿԴԱԴԱՐԵՑՎԻ

1962թ. 1963թ. 1964թ. 1965թ. 1969թ.

հեռանկարներ է բացելու ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության առջև: «Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվի առջև խնդիր է դրված արագ կերպով յուրացնել ացետիլցելյուլոզի, բամբակե ցելյուլոզի արտադրությունը, ինչպես նաև ընդլայնել ու ավելացնել վինիլացետատի և պոլիվինիլային սպիրտի արտադրությունը:

Հաշվի առնելով մեծ քանակությամբ ամոնիակի և կարբամիդ արտադրելու անհրաժեշտությունը, նախատեսվում է Կիրովականի քիմկոմբինատում ամոնիակի արտադրությունն ընդլայնել (փոխադրելով բնական գազի) և կազմակերպել կարբամիդի արտադրություն՝ առաջին հերթը գործարկելով 1966 թվականին: Կոմբինատը պետք է ավելացնի նաև սինթետիկ կորունդի արտադրությունը:

Կիրովի անվան գործարանում նախատեսված է 1964—1965 թվականներին կրկնապատկել քլորոպրե-




նային կաուչուկի և կաուստիկ սոդայի թողարկման կարողությունները, ինչպես նաև գործարկել բնական գազից ացետիլեն արտադրելու կարողությունները: Բացի դրանից, կիրովցիների առջև խնդիր է դրված խիստ մեծացնել երկրի գյուղատնտեսության համար շատ անհրաժեշտ հերբիցիդի՝ կրոտիլինի արտադրությունը, այն հասցնելով տարեկան 4.000 տոննայի:

«Պոլիպլաստ» գործարանում խնդիր է դրված զգալիորեն ավելացնել անհյուս հիմքով բարձրորակ նոր լինոլեումի արտադրությունը, որը հնարավորություն կըն-



ձեռի հետագայում նշանակալի չափերով տնտեսելու դեֆիցիտային և արժեքավոր հաճարի բնափայտ, որն օգտագործվում է պարկետի արտադրության համար:

Գործող քիմիական ձեռնարկությունների ընդլայնելու և վերակառուցելու հետ մեկտեղ նախատեսված է Երևանում կառուցել վինոլ արժեքավոր թելի արտադրության նոր գործարան: Կարևոր խնդիր է նաև քիմիական ռեակտիվների գործարանի կառուցման արագացումը, իսկ հետագայում նաև բարդ հանքային պարարտանյութերի խոշոր գործարանի կառուցումը, նրա առաջին հերթը գործարկելով 1968 թվականին:




Կիրովի անվան գործարանում բնական գազից ացետիլենի արտադրության բոլոր ագրեգատները գործարկելու դեպքում միաժամանակ կարտադրվի սինթեզգազ: Դա շատ կարևոր պրոբլեմ է, քանի որ սինթեզ-գազի բազայի վրա Մասիս կայարանի շրջակայքում կառուցվելու է բարձրորակ պլաստմասսաների, սինթետիկ ձյութերի և այլ քիմիական նյութերի արտադրության քիմիական խոշոր կոմբինատ:

Մեծ խնդիրներ են դրվում Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի վրա, որտեղ ծծմբաթթվի արտադրությունը պետք է հասցվի տարեկան մի քանի հարյուր հազար տոննայի:

Ռեսպուբլիկայի քիմիագործների առջև նաև խնդիր է դրված առաջիկա երկու տարում ընդլայնել հատկապես

մաքուր և օժանդակ նյութերի, լաքերի, ներկերի, կենցաղային քիմիայի ապրանքների և ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող այլ փոքրատոննաժ քիմիական նյութերի արտադրությունը և բարելավել դրանց որակը։

**Գունավոր մետալուրգիան** զարգանալու է պղնձի և մոլիբդենի կոնցենտրատների և այլ տեսակի արտադրանքի արտադրության զգալի ավելացման ուղղությամբ։ Դա կապահովվի նախ և առաջ Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի կարողությունների լրիվ յուրացման և Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում լրացուցիչ կարողությունների գործարկման շնորհիվ, ինչպես նաև Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցումն ավարտվելու շնորհիվ։




Մեծ և պատվավոր խնդիրներ են դրված երկրաբանների առջև։ Նրանք պետք է հայտնաբերեն սև, գունավոր, հազվագյուտ, ազնիվ մետաղների և այլ օգտակար հանածոների նոր արդյունաբերական հանքավայրեր։ Դա հնարավորություն կտա ռեսպուբլիկայում ավելացնել արդյունաբերական պաշարները և ստեղծել հուսալի հումքային բազա՝ գործող և նոր կազմակերպվող լեռնահանքային ձեռնարկությունների համար։ Շարունակվելու են նաև ռեսպուբլիկայի տերիտորիայի նավթագազապարունակության արագացված հետախուզության և հեռանկարների հայտնաբերման աշխատանքները։



Վիթխարի աշխատանք է կատարվելու մեքենաշինության բնագավառում։ Յոթնամյակի մնացած երկու տարում, անցյալ տարվա համեմատությամբ, նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացնել 28,5 տոկոսով։

Մեքենաշինության բնագավառում նոր կարողությունների գործարկման հետ մեկտեղ մոտակա տարիների համար հիմնական խնդիր է բարձր արտադրողական մեքենաների, հաստոցների, բարձր ճշգրտության սարքերի նոր տիպերի արտադրության յուրացումը, միաժամանակ արտադրությունից հանելով հնացած կոնստրուկցիաները, ինչպես նաև յուրացնելով նոր տեխնոլոգիական պրոցեսները, բարելավելով թողարկվող արտադրանքի որակը, ընդլայնելով կոոպերացումը և խորացնելով մասնագիտացումը։

Մեքենաշինության կարևորագույն ճյուղերից մեկն է էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։ Մոտակա երկու-երեք տարում գործող ձեռնարկություններն ընդլայնելու և վերակառուցելու հետ մեկտեղ գործարկվելու են բարձրավոլտ ապարատների, հզոր տրանսֆորմատորների գործարաններ և այլ ձեռնարկություններ։

Էներգետիկայի բնագավառում խնդիր է դրված 1964—1965 թվականներին. ապահովել 290 հազար կիլովատ նոր կարողությունների, նոր էլեկտրաենթակայանների, էլեկտրահաղորդման հարյուրավոր կիլոմետր գծերի գործարկումը, արագացնել Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցումը և լուծել ռեսպուբլիկայի ամենախոշոր էլեկտրակայանի՝ մեկ միլիոն 200 հազար կիլովատ կարողությամբ Սևանի պետական շրջանային էլեկտրակայանի կառուցման հարցը։

Առաջիկայում խոշոր աշխատանք է կատարվելու Արփա գետի ջրերը Սևանա լիճը շուռ տալու գործում։ Այդ միջոցառումը հնարավորություն կտա լճի ջրերը պահպանել բարձր մակարդակի վրա։ Նախատեսվում է մինչև 1969 թվականը դադարեցնել Սևանա լճի ջրերի դարավոր պաշարների թողքը։

Սովետական Հայաստանում ամեն տարի կառուցվում են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, բնակելի տներ, դպրոցներ ու կուլտուրայի այլ օջախներ։ Որպեսզի նախատեսված շինարարությունը կատարվի անթերի, հատուկ ուշադրություն է դարձվելու շինանյութերի արդյունաբերության զարգացման վրա։ Խնդիր է դրված 1964—1965 թվականներին ապահովել ցեմենտի արտադրության հետագա աճը, միաժամանակ ավելացնելով թո-




զարկվող պորտլանդ-ցեմենտի տեսակարար կշիռը: Մին-



չև 1965 թվականը ցեմենտի արտադրությունը հասցվելու է տարեկան 635 հազար տոննայի, միաժամանակ բարձրացվելու է ցեմենտի միջին մարկան, հավաքովի երկաթբետոնի արտադրությունը հասցվելու է 560 հազար խորանարդ մետրի, որը թույլ կտա յոթնամյա պլանը գերակատարել ավելի քան 50 տոկոսով:

Դրա հետ միասին կազմակերպվելու է արհեստական ոռմնաբլոկների արտադրություն՝ տուֆի թափոնների բազայի վրա, այն հասցնելով 1964 թվականին՝ 100 հազար, 1965 թվականին՝ 375 հազար խորանարդ մետրի: Բարձրորակ ֆրակցիոնացված բնական լցուկների արտադրության համար շահագործման կհանձնվեն Կարմրաշենի խարամների և Արագածի պերլիտների հանույթի ու վերամշակման ձեռնարկությունները:

Թեթև արդյունաբերության բնագավառում կատարվելու է կարի և տրիկոտաժի ֆաբրիկաների մասնագիտացում, դրանք օգտագործելով բնակչության կողմից պահանջվող արտադրանքի թողարկման նպատակով: Այդ ճյուղում կարևոր խնդիր է սինթետիկ նյութերի լայն կիրառությունը, միաժամանակ թողարկվող արտադրանքի ասորտիմենտի ընդլայնումը և որակի խիստ բարելավումը:

Փայտամշակման արդյունաբերության բնագավառում խնդիր է դրված գործարկել արտադրական նոր կարողություններ և ավելացնել արտադրանքի, հատկապես կահույքի, փայտաշեղային սալերի, դաշնամուրների և այլ իրերի թողարկումը: Դրա հետ միասին անընդհատ ընդլայնվելու է կահույքի ասորտիմենտը և բարելավվելու է որակը:

Սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության բնագավառում արտադրանքի աճը տեղի կունենա հումքային բազայի աճին համապատասխան, ինչպես նաև թողարկվող արտադրանքի ասորտիմենտի ընդլայնման, որակի բարելավման, աշխատատար արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, սկզբնական հումքի կոմպլեքսային օգտագործման ճանապարհով:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները պատիվով կկատարեն համագումարի որոշումները և երկրին կտան ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք:

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՍՏԵՂԾՈՂ

*Սովետական Միության կոմունիստական պարտիայի XXII համագումարը բազմաթիվ կարևոր հարցեր լուծելու հետ միասին որոշեց նաև ստեղծել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության նոր կոնստիտուցիա:*

*Պարտիայի XXII համագումարին տված զեկուցման մեջ, խոսելով նոր կոնստիտուցիայի մասին, ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ Սովետական Միությունը թևակոխել է իր զարգացման նոր էտապը, ավելի բարձր աստիճանի է հասել սոցիալիստական դեմոկրատիան: «ՍՍՌՄ նոր կոնստիտուցիան, որի մշակմանը,— ասաց նա,— մենք ձեռնամուխ ենք լինում, պետք է արտացոլի կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սովետական հասարակարգի կյանքի նոր գծերը»:*

*Ինչպես հայտնի է, սովետական ժողովուրդը երեք անգամ (1918, 1924 և 1936 թվականներին) ընդունել է կոնստիտուցիաներ, որոնք ամենադեմոկրատական օրենքներն են աշխարհում: Այժմ մշակվում է նոր կոնստիտուցիա: Այնինչ, կապիտալիստական շատ երկրներում գործում են հարյուրավոր տարիներ առաջ գրված կոնստիտուցիաներ: ԱՄՆ-ի ներկայիս կոնստիտուցիան գրված է 1787 թվականին, նրա ընդունումից հետո անցել է ավելի քան 177 տարի, բայց դեռևս այն գործում է:*

*Սովետական առաջին կոնստիտուցիան, որին վերաբերում է ներկա գրույցը, ստեղծվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ժամանակաշրջանում, մեծ Լենինի նախաձեռնությամբ:*

*1918 թվականի հուլիսի 10-ին, ռևոլյուցիայի հաղթանակից մի քանի ամիս հետո, սովետների համառուսաստանյան 5-րդ համագումարը ընդունեց Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկայի կոնստիտուցիան, աշխարհի առաջին սոցիալիստական պետության հիմնական օրենքը: Նոր կոնստիտուցիայի հիմքը հանդիսացան ռևոլյուցիայի*



*բոցերի մեջ ընդունված «Խաղաղության մասին», «Հողի մասին» դեկրետները: Այդ դեկրետների հեղինակը Վ. Ի. Լենինն էր: Սովետական պետությունը ծնվեց որպես խաղաղասիրական պետություն, նա լուսավոր փարոս հանդիսացավ խաղաղության, աշխատանքի, ազատության և անկախության համար միլիոնավոր ժողովուրդների պայքարի համար: Սովետական առաջին կոնստիտուցիան աշխարհի ամենամարդասիրական, ամենադեմոկրատական կոնստիտուցիան էր:*

*1918 թվականի հունիսի 3-ին Վ. Ի. Լենինի նախագահությամբ ՌԿՊ(բ) ԿԿ-ի հանձնաժողովը քննության է առնում կոնստիտուցիոն հանձնաժողովի և արդարադատության ժողովրդական կոմիսարիատի կողմից ներկայացված նախագծերը. որպես հիմք ընդունվում է Համառուսաստանյան ԿԳԿ-ի կոնստիտուցիոն հանձնաժողովի նախագիծը: Վ. Ի. Լենինի առաջարկությամբ նախագծում մտցվում են մի շարք փոփոխություններ, որոնք վերաբերում էին քաղաքացիների դեմոկրատական իրավունքներին: Որպես առաջին բաժին, կոնստիտուցիայի նախագծի մեջ մտցվում է Լենինի կողմից գրված «Աշխատավոր և շահագործվող ժողովուրդների իրավունքների դեկլարացիան»:*

*«... Սովետական կոնստիտուցիան,— ասել է Վ. Ի. Լենինը,— որը սովետների նման ստեղծվել է ռևոլյուցիոն պայքարի ժամանակաշրջանում,— առաջին կոնստիտուցիան է, որը աշխատավորների իշխանությունը հռչակել է որպես պետական իշխանություն, որը իրավունքներից հեռացրել է շահագործողներին՝ նոր կյանքի կառուցման հակառակորդներին: Մյուս պետությունների կոնստիտուցիաներից դրա այդ գլխավոր տարբերությունն էլ հենց կապիտալի դեմ հաղթանակելու գրավականն է»:*

*Աշխարհի առաջին սոցիալիստական պետության անդրանիկ կոնստիտուցիան օրենսդրական կարգով ձևակերպեց սովետական պետության նվաճումները, օրինականացրեց պրոլետարիատի դիկտատուրան սովետների ձևով, երաշխավորեց ազգությունների իրավահավասարությունը , ժողովուրդների կամավոր և լիակատար համաձայնությունը, ՌՍՖՍՌ-ի մեջ միավորվելու և ձեռք-ձեռքի տված համագործակցելու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով:*

*Բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիների*

սոցիալիստական պետության առաջին կոնստիտուցիան օրենսդրական կարգով ամրապնդեց նոր, սովետական հասարակարգի առաջին արդյունքները։ Հողը հայտարարվեց պետական սեփականություն, ազգայնացվեցին ֆաբրիկաները, գործարանները, բանկերը, երկաթուղային ու ջրային տրանսպորտը, կապի միջոցները։ Արտաքին առևտրի մենաշնորհն անցավ պետության ձեռքը։ Սահմանվեց աշխատանքի կազմակերպման սոցիալիստական կարգ՝ «Ով չաշխատի, նա չի ուտի» սկզբունքով։

Կոնստիտուցիան ցույց տվեց սոցիալիզմի ուղիով բանվորների և գյուղացիների սովետական պետության հետագա զարգացման մեծ հեռանկարները։ Այդ կոնստիտուցիան ոչ միայն ձեռք բերված արդյունքների հանրագումարն էր, այլև նա ծրագրային խնդիրներ առաջադրեց սոցիալիզմի կառուցման վերաբերյալ։

Ռուսաստանյան Ֆեդերացիայի 1918 թվականի կոնստիտուցիան օրենսդրական կարգով ձևակերպեց սովետական պետության պետական կառուցվածքի հիմնական սկզբունքները։ Առաջին անգամ աշխատավորները ներգրավվեցին պետության կառավարման գործում, իշխանության ինչպես բարձրագույն, այնպես էլ պետական օրգաններր անխզելի կապ հաստատեցին սովետական քաղաքացիների հետ, իրականացվեցին դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները, աշխատավորներին տրվեցին մեծ իրավունքներ, և այդ իրավունքներից ու ազատությունից օգտվելն ապահովվեց նյութական երաշխիքներով։

Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական պետության առաջին կոնստիտուցիան օրինակ դարձավ բոլոր եղբայրական սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ կոնստիտուցիայի ընդունման համար։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին, հայ ժողովուրդը, ռուս մեծ ժողովրդի և եղբայրական մյուս ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ, տապալեց իմպերիալիստների վարձկան դաշնակցականների կառավարությունը և Հայաստանը հռչակեց ազատ, անկախ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա։ Վերածնվեց բազմաթիվ տառապանքներ կրած հայ ժողովուրդը սովետական կարգերի շնորհիվ։ Առաջին անգամ հայ բանվորն ու գյուղացին դարձան իրենց դարը քրտինքով վաստակած



աշխատանքի տերը. պետության ղեկավարությունն անցավ նրանց ձեռքը։ Առաջին անգամ հայ աշխատավորը մշակեց իր կոնստիտուցիան, որը 1922 թվականի փետրվարի 3-ին հաստատվեց Հայաստանի բանվորների, գյուղացիների և կարմիր բանակայինների սովետների երկրորդ համագումարում։

ՀՍՍՌ կոնստիտուցիայի հիմքում դրվեցին սոցիալիստական առաջին պետության մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ մշակված ՌՍՖՍՌ 1918 թվականի կոնստիտուցիայի հիմնական սկզբունքները, հաշվի առնվեցին նաև Սովետական Հայաստանի առանձնահատկությունները և յուրահատուկ պայմանները։

Կոնստիտուցիան օրենսդրական կարգով ամրապնդեց տնտեսության հրամանատարական բարձունքների անցումը աշխատավորների ձեռքը։ Տնտեսության ղեկավարության գլուխ կանգնեցին իրենք՝ աշխատավորները։ Ստեղծվեցին բոլոր նախապայմանները շահագործող դասակարգերի և մարդու կողմից մարդուն շահագործելու ամեն տեսակի հնարավորությունների վերացման համար։

Կոնստիտուցիայի հիմքում դրվեց բոլոր ազգերի միջև եղբայրական դաշինքի ամրապնդման, նրանց իրավահավասարության և փոխադարձ հարգանքի սկզբունքը։ Պետական, տնտեսական, կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում աշխատավորները օգտվում են միատեսակ իրավունքներից։ Եկեղեցին անջատվում է պետությունից՝ վերածվելով հավատացյալների մասնավոր համայնքի, և դպրոցը՝ եկեղեցուց։ Դպրոցը դարձավ սոցիալիստական դաստիարակության օջախ։

Կոնստիտուցիան ՀՍՍՌ աշխատավորների համար ապահովեց խոսքի, աշխատավորների ժողովների, միտինգների, ցույցերի և այլնի ազատություն։ Մամուլի անկախությունն իրապես ապահովելու համար նրան տրվեցին նյութական, տեխնիկական և այլ հարմարություններ։ Կոնստիտուցիան ձևակերպեց նաև ռեսպուբլիկայի աշխատավորների պարտականությունները։

ՀՍՍՌ կոնստիտուցիան սահմանեց այնպիսի հասարակական-քաղաքական կարգեր, որոնք համապատասխանում էին աշխատավոր դասակարգի շահերին։ Ռեսպուբլիկայի աշխատավորները, սովետական մյուս ժողովուրդների եղբայրական համագործակցությամբ, անշեղորեն կենսագործելով ՀՍՍՌ կոնստիտուցիան, բռնե-

ցին նոր կյանքի սոցիալիստական կառուցման ուղին։

Սովետական առաջին կոնստիտուցիան ռևոլյուցիոն մեծ ազդեցություն գործեց ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի վրա։ «Սովետ» բառը,— ասում էր Վ. Ի. Լենինը,— այժմ բոլորին հասկանալի է, իսկ սովետական կոնստիտուցիան թարգմանված է բոլոր լեզուներով և նրան ծանոթ է ամեն մի բանվոր»։

Առաջին սովետական կոնստիտուցիայի համաշխարհային նշանակությունը մեծ էր, պատմության մեջ առաջին անգամ այն ամբողջ աշխարհի աշխատավորությանը հնարավորություն տվեց իմանալու, թե ինչպիսի վիթխարի հաջողությունների կհասնի աշխատավորությունը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ։

Դոցենտ Շ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՈՐՔԱՆ ԿՈՒՐԱԽԱՆԱՐ ԻԼՅԻՉԸ

Կենսագործելով իր ծրագիրը, մեր պարտիան նորից ու նորից ցույց է տալիս, որ կարողանում է խոր գիտականությամբ ու ստեղծագործաբար լուծել կոմունիզմի առաջընթացի բարդ հարցերը։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ այսօր պարտիայի ռևոլյուցիոն դերը ամենից առաջ դրսևորվում է արտադրության, գիտության, տեխնիկայի զարգացման մեջ, այնտեղ, որտեղ դրվում է նոր հասարակարգի նյութա-տեխնիկական հիմքը, լուծվում նրա գլխավոր տնտեսական խնդիրը։

Արդյունաբերության և գիտության առաջադիմական ճյուղերի նախապատիվ զարգացման պարտիայի կուրսը՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների մասին Վլադիմիր Իլյիչ Լենինի հանճարեղ գաղափարների հետագա զարգացումն ու կոնկրետացումն է ժամանակակից պայմաններում։ Մեծ առաջնորդը պարտիային ուսուցանում էր, որ ռևոլյուցիայի հաղթանակից հետո առաջնահերթ նշանակություն է ստանում տնտեսական շինարարությունը, որպես կոմունիզմի համար մղվող պայքարի գլխավոր ասպարեզ։

Ահա արդեն քառասուն տարի է, ինչ դադարել է բաբախելուց հարազատ Իլյիչի սիրտը։ Բայց պատմության ամեն մի նոր քայլի հետ ավելի ու ավելի պայծառորեն



է երևում լենինյան գաղափարների ճշմարտացիությունը, դրանց գիտական մեծագույն արժանահավատությունը և հաղթական ուժը։

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի հաղթանակը հանդիսացավ երկրի ինդուստրացումը՝ բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի այդ մեծ սխրագործությունը. Նրանք դրա համար չէին խնայում ոչ ուժ, ոչ միջոցներ, գիտակցաբար դիմում էին մեծ զրկանքների։ Իրագործված է նաև լենինյան կոոպերատիվ պլանը. Գյուղատնտեսության կոլեկտիվացումը մեծ հեղաշրջում էր տնտեսական հարաբերությունների մեջ, գյուղացիության կյանքի ամբողջ կացութաձևում։ Մեր երկրում իրագործվում է նաև կուլտուրական հեղափոխությունը, որը պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մասսաներին հաղորդակից դարձրեց մարդկության մշակած կուլտուրայի հարստություններին։

Որպես լենինյան ուղիով հավատարմորեն ընթացող պարտիայի և ժողովրդի տնտեսական ջանքերի տրիումֆ, հնչում են ՍՄԿՊ ծրագրի խոսքերը՝ «Սոցիալիզմը, որի անխուսափելիությունը գիտականորեն կանխագուշակված է Մարքսի և Էնգելսի կողմից, սոցիալիզմը, որի կառուցման պլանը կանխագծել է Լենինը, Սովետական Միությունում ռեալ իրականություն է դարձել»։

Վլադիմիր Իլյիչ Լենինին են պատկանում այս թևավոր խոսքերը՝ «Կոմունիզմը սովետական իշխանությունն է՝ գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը»։ Այդ մեծ ֆորմուլան հռչակվեց սովետների երիտասարդ ռեսպուբլիկայի համար ամենադժվարին ժամանակներում, երկիրը «խարխափում էր մշուշի մեջ», ինչպես այն ժամանակ գրում էին արտասահմանում, ժողովրդական տնտեսությունը ավերվել էր պատերազմներից, մարդիկ ապրում էին սովի և ցրտության մեջ։ Բայց Լենինը, այդ «Կրեմլյան երազողը», ինչպես նրան անվանեց անգլիացի գրող Ուելսը, հանճարեղ խորաթափանցությամբ տեսավ մեր հայրենիքի մեծ ապագան։ Սովետական կարգերի հողի վրա, սովորեցնում էր նա, կոմունիզմի հիմքերի վերջնական հաղթանակը կստեղծվի երկրի էլեկտրիֆիկացման շնորհիվ։ Ռուսաստանի էկոնոմիկայի զարգացման առաջին կոմպլեքսային պլանը ԳՈԷԼՌՈ-ի պլանը Վլադիմիր Իլյիչը անվանեց պարտիայի երկրորդ ծրագիրը։

Այդ պլանով նախատեսվում էր էլեկտրաէներգիայի

արտադրությունը հասցնել տարեկան ութ միլիարդ 800 միլիոն կիլովատ-ժամի։

Արդեն 1947 թվականին Սովետական Միությունը էլեկտրաէներգիայի արտադրությամբ Եվրոպայում գրավեց առաջին տեղը և աշխարհում՝ երկրորդ տեղը։ 1963 թվականին մեր էլեկտրակայանները տվեցին մոտավորապես 412 միլիարդ կիլովատ-ժամ։ Իսկ մինչև 1980 թվականը էլեկտրաէներգիայի արտադրությունը կհասնի տարեկան մոտավորապես երեք տրիլիոն կիլովատ-ժամի։ Իր XXII համագումարում կոմունիստների պարտիան էլեկտրիֆիկացումը հայտարարեց կոմունիզմի կառուցման ամբողջ ծրագրի առանցքը։

Մեր պարտիային հատուկ է ստեղծագործական, մարքս-լենինյան մոտեցումը տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծմանը։ «Եթե Վլադիմիր Իլյիչ Լենինը կենդանի լիներ,— ասաց ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում Ն. Ս. Խրուշչովը,— ապա ըստ երևույթին, հիմա նա կասեր մոտավորապես այսպես՝ «կոմունիզմը սովետական իշխանությունն է՝ գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը, գումարած ժողովրդական տնտեսության քիմիացումը»։

Ինչո՞ւ է քիմիան այսօր դառնում կոմունիստական շինարարության հարվածային ճակատը. որովհետև քիմիան, ինչպես այն պատկերավոր անվանեցին Կենտկոմի պլենումում, ժողովրդական հարստությունների դարբնոցն է, առատության դարբնոցը։ Քիմիական արդյունաբերության զարգացումը թույլ կտա երկրի ժողովրդական տնտեսությունն ապահովել որակապես նոր, այնպիսի կատարյալ նյութերով, որոնք կփոխարինեն մետաղներին, գյուղատնտեսական հումքին։ Կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան անհրաժեշտ քանակությամբ հանքային պարարտանյութեր, հերբիցիդներ և բույսերի պաշտպանության միջոցներ, մի բան, որն ամուր երաշխիք կստեղծի բարձր ու կայուն բերքի ստացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Քիմիան հնարավորություն է տալիս ոչ միայն արմատապես լուծելու գյուղատնտեսական արտադրության մթերքների առատության պրոբլեմը, այլև նա անսահման հնարավորություններ է բացում չափազանց լայն ու բազմազան ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների արտադրության համար։ Քիմիան կարող է, ասված է պարտիայի Կենտկոմի պլենումում, ոչ միայն անել, այլև հագցնել մարդուն, նա կենցաղ կբերի մեծ թվով հարմարավետ, էժան, գործածական առարկաներ։

Ըստ գլխավոր հեռանկարի, քիմիան երկրին կտա յուրաքանչյուր երրորդ կիլոգրամ հացը, յուրաքանչյուր երկրորդ կամ երրորդ կիլոգրամ կարտոֆիլն ու բանջարեղենը, լվացող նյութերի հինգ կիլոգրամից չորսը, գործվածքների կեսը, վերջապես աշխատօրվա կրճատման յուրաքանչյուր երկրորդ ժամը։

Մոտակա յոթ տարում քիմիան ոչ միայն կծածկի իր զարգացման համար ներդրված բոլոր ծախսերը, այլև լրացուցիչ կբերվի կտա 15 միլիարդ ռուբլու շահույթ։ Դա ժողովրդի բարեկեցության բարձրացման ռեալ աղբյուր է։

Քիմիայի բուռն զարգացումը թույլ կտա էլ ավելի բարձր մակարդակի հասցնել սովետական երկրի էկոնոմիկան, էլ ավելի մեծ ուժով կդրսևորվեն տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները կապիտալիստականի հանդեպ։ Դրանով իսկ նոր խորտակիչ հարված կհասցվի կապիտալիզմին խաղաղ տնտեսական մրցության ասպարեզում։ Եվ դա հեղաշրջող, ոգեշնչող ներգործություն կունենա ամբողջ աշխարհի աշխատավորների մտքերի ու սրտերի վրա։

Որքան մեր հասարակությունը մոտենա նվիրական նպատակին, այնքան լրիվ կբացահայտվի կոմունիզմի լենինյան հանճարեղ ֆորմուլայի նվիրական իմաստը։ Չէ որ արդեն այսօր երևում է, որ թե երկրի էլեկտրիֆիկացումը, թե ժողովրդական տնտեսության քիմիացումը անխզելիորեն զուգորդվում են ավտոմատացման, ատոմային էներգետիկայի, ռադիոէլեկտրոնիկայի, ռեակտիվ տեխնիկայի և արդի տեխնիկական առաջադիմության բազմաթիվ այլ ուղղությունների հետագա զարգացման հետ։

Այս ամենը սովետների երկրում միլիոնների աշխատանքով ստեղծվող կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կարևորագույն բաղկացուցիչ մասերն են։ Որքան կուրախանար Վլադիմիր Իլյիչը, եթե տեսներ, թե դեպի կոմունիստական ապագան ինչպիսի հսկայական թափով է ընթանում մեր հայրենիքը։

Ա. ՄՈՏԻԼՅՈՎ

Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՊԱՆԱՄԱՆ ՊԱՐԶԵԼ Է ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԴՐՈՇԸ

Հունվարի լույս 10-ի գիշերը մի սոսկալի գույժ ցնցեց ողջ աշխարհը. տանկերով, հրանոթներով և գնդացիրներով զինված ամերիկյան զորամասերը Պանամայի ջրանցքի գոտում արյունալի դատաստան տեսան անզեն ցուցարարների նկատմամբ։ Իմպերիալիստական վիթխարի տերությունը զինված բացահայտ ագրեսիայի դիմեց Պանամայի փոքրիկ ռեսպուբլիկայի դեմ, որի ամբողջ բնակչությունը կազմում է ընդամենը մեկ միլիոն։ Պանամայի հողը ներկվեց պանամացի հարյուրավոր հայրենասերների արյամբ։ Ամերիկյան ռազմամոլների ավազակային առաջին հարձակմանը հետևեցին նոր հարձակումներ։ Եվ, որ ամենակարևորն է ու ամենաապշեցուցիչը, պանամացիները չսասանեցին, չընկրկեցին ահեղ թշնամու առաջ։ Նրանք վճռաբար պահանջում են՝ թո՛ղ ամերիկացիները հեռանան պանամական հողից։

Պանամայում դրությունը ծայրահեղորեն լարված է։ Իսկ ի՞նչ է տեղի ունեցել։ Համառոտակի անենք Պանամայի ստեղծման և ստրկացման պատմությունը։ Դա բացահայտում է նորացված գաղութատիրության այն մեթոդները, որ ԱՄՆ-ը գործադրում էր Լատինական Ամերիկայի ժողովուրդներին ենթարկելու և սանձահարելու համար։

Այս դարի սկզբին ԱՄՆ-ի կառավարությունը ծրագրեց ջրանցք փորել Պանամայի պարանոցի ամենանեղ տեղում, որը միմյանց է կապում Հյուսիսային և Հարավային Ամերիկան և, այդպիսով, Ատլանտյան օվկիանոսը միացնել Խաղաղ օվկիանոսին։ Այն ժամանակ պարանոցի այդ մասը պատկանում էր Կոլումբիային։ ԱՄՆ-ը Կոլումբիայի կառավարությանը հարկադրեց ստորագրել ջրանցքի կառուցման պայմանագիրը։ Սակայն Կոլումբիայի սենատը մերժեց այդ գործարքը՝ որպես անիրավահավասար և կողոպտչական գործարք։ Այն ժամանակ ԱՄՆ-ի կառավարությունը իր վարձկանների միջոցով Կոլումբիայում «ապստամբություն» կազմակերպեց, որի հետևանքով Կոլումբիայից անջատվեց 74 հազար քառակուսի կիլոմետր տարածությամբ մի տերիտորիա։ 1903 թվականին այդ տերիտորիան հռչակվեց Պանամայի «անկախ» ռեսպուբլիկա։ Նորաստեղծ ռեսպուբլիկային ԱՄՆ-ը իսկույնևեթ ստիպեց ստորագրել Միացյալ Նահանգներին 16 կիլոմետր լայնությամբ մի հողաշերտ հանձնելու պայմանագիր, որտեղ և փորվեց Պանամայի ջրանցքը։ Պանամայի ջրանցքի գոտին բառիս բուն իմաստով դարձավ ԱՄՆ-ի գաղութային տերիտորիան։ Այն կառավարում է նահանգապետը, որին նշանակում է ԱՄՆ-ի պրեզիդենտը։ Այստեղ գործում են ոչ թե պանամական, այլ ամերիկյան օրենքներ։ Ամերիկյան օկուպանտները գոտու բնիկների հետ վարվում են ինչպես ստորադաս մարդկանց հետ։ ԱՄՆ-ը ջրանցքի շահագործումից կորզում է վիթխարի շահույթներ, իսկ Պանամայի կառավարությանը չնչին բաժին տալիս։

Բայց բանը միայն շահույթները չեն։ Ամերիկյան իմպերիալիստները տառացիորեն ատամներով կառչում են Պանամայի ջրանցքի գոտուց նաև այն պատճառով, որ այն դարձել է նրանց ռազմական հենակետը, որտեղից նրանք սպառնում են Կենտրոնական և Հարավային Ամերիկայի բոլոր ժողովուրդներին։

Պանամայի հայրենասերները հասկանում են, որ քանի դեռ ջրանցքի գոտին գտնվում է օտար ստրկացնողների ձեռքում, Պանաման իսկական անկախ պետություն չի լինի։ Պանամայի ժողովուրդը տասնյակ տարիներ է, ինչ պայքարում է ամերիկյան օկուպացմանը վերջ տալու համար։ 1960 թվականին նրանք հասան այն բանին, որ ԱՄՆ-ը պարտավորվեց Պանամայի ջրանցքի գոտում ամերիկյանի կողքին բարձրացնել նաև պանամական դրոշակ։ Սակայն նույնիսկ այդ չնչին զիջումը, որի համար Պանաման հատուցեց իր հավատարիմ զավակներից շատերի արյամբ, գաղութարարներին անչափ շատ թվաց։ Նրանք խախտեցին համաձայնագիրը, որը առաջ բերեց պանամացիների ցասումնալից բողոքը և անմիջական առիթ դարձավ վերջին օրերի արյունալի իրադարձությունների։ ԱՄՆ-ի ուխտադրժությունից զայրացած պանամացիները հունվարի 9-ի երեկոյան քանդեցին ջրանցքի գոտին Պանամայի մայրաքաղաքից անջատող պողպատե վանդակապատը, գոտում կազմա-

կերպեցին բողոքի ցույց։ Ամերիկյան օկուպանտները պատասխանեցին հրանոթային, հրացանային ու գնդացրային կրակով։ Սպանվեց 20, վիրավորվեց մոտ 300 պանամացի։

Ամերիկյան գաղութարարների ոճրագործությունը ցասումնալից բողոքներ առաջացրեց բուն Պանամայում և Լատինական Ամերիկայի բոլոր երկրներում։ Այդ երկրների ժողովրդական կազմակերպությունները իրենց համերաշխությունը հայտնեցին Պանամայի կառավարության գործողությունների նկատմամբ, որը խզեց ԱՄՆ-ի հետ ունեցած դիվանագիտական հարաբերությունները և հայտարարեց, որ ինքը չեղյալ է հայտարարում Պանամայի ջրանցքի կառավարման վերաբերյալ ԱՄՆ-ի հետ կնքված պայմանագիրը։ Քանի դեռ այդ պայմանագիրը վերանայված չի լինի, հայտարարեց Պանամայի կառավարությունը, Պանաման ԱՄՆ-ի հետ իր դիվանագիտական հարաբերությունները չի վերականգնի։

Մեկ օր անց պետական քարտուղար Դ. Ռասկը, որին հարցրին, թե ԱՄՆ-ը արդյոք պատրա՞ստ է հեռանալու Պանամայի ջրանցքի գոտուց, գոռոզամտորեն հայտարարեց. «Պատասխանս է՝ ոչ»։ Եվ հենց այդ ժամանակ էլ ամերիկյան զորքերը մի քանի վայրում կրակ բացեցին պանամացիների վրա։

Պանամայի ներկա իրադարձություններից ընդամենը մի քանի օր առաջ ՍՍՌՄ կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը աշխարհի երկրների կառավարություններին հղած ուղերձում մատնացույց արեց այն մեծ վտանգը, որ խաղաղության և ժողովուրդների ազատության համար ստեղծվում է ուրիշի տերիտորիաներում օտարերկրյա ռազմական բազաների առկայությամբ, և խոսեց դրանց վերացման անհրաժեշտության մասին։

ԱՄՆ-ի կառավարության գործողությունները պերճախոս կերպով հաստատում են ժամանակին արված սովետական այդ առաջարկության ողջ իմաստը։ Ջգտելով բռնությամբ իր ձեռքում պահել Պանամայի ազգային տերիտորիայի մի մասը, ԱՄՆ-ը վկայակոչում է իր «իրավունքները», որոնք իբր բխում են ավելի քան 60 տարի առաջ Պանամային պարտադրված պայմանագրից։



Համենայն դեպս, երևում է, որ ԱՄՆ-ի կառավարողները հենց իրենք են զգում իրենց դիրքի խարխուլ լինելը։ Ուստի գործի են դնում ևս մեկ «արդարացում», թե իբր Պանամայում գործում են «Կաստրոյի գործակալները», իբր նրանք են պանամացիներին դրդում պայքարելու ջրանցքի գոտին Պանամային վերադարձնելու համար։ Բայց դա գաղութարարների հին և բոլորին արդեն վաղուց զզվեցրած մեթոդն է, որոնք ձգտում են Լատինական Ամերիկայի ազգային-ազատագրական շարժումը պատկերել որպես Մոսկվայի կամ Կուբայի «մեքենայությունների» հետևանք։

Արդեն լուրեր են ստացվում այն մասին, որ ԱՄՆ-ը հեղաշրջում է պատրաստում Պանամայում։ Ամերիկյան մի շարք թերթեր հաղորդագրություններ են տպագրել, որ Միացյալ Նահանգները պատրաստվում են «բանանի դիվանագիտության» տրադիցիոն կանոններով զինվորական հեղաշրջում կատարել Պանամայում, փորձելով ներսից խեղդել Պանամայի ժողովրդի ազգային-ազատագրական շարժումը։

Այդ բանը զգում են պանամացիները, որոնք լի են իրենց անկախության համար մինչև վերջը պայքարելու վճռականությամբ։

Պանամայի իրադարձությունները ողջ աշխարհի առաջ մերկացրեցին ամերիկյան իմպերիալիստների իսկական ավազակային բնույթը։ Նրանց համար այժմ, քան առաջ, ավելի դժվար կլինի իրենց ձևացնել որպես Լատինական Ամերիկայի ժողովուրդների բարեկամ։ Բոլոր ժողովուրդները համակրում են Պանամայի արդար պայքարը։ Սովետական Միությունը համակված է այդ նույն զգացմունքներով և կարծում է, որ ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդը պետք է ձեռնարկի Պանամայի դեմ սկսված ագրեսիային վերջ տալու միջոցառումներ։

ՅԱ. ՄԱՋՈՐ

# ՔԻՄԻԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Կալիական պարարտանյութերը բույսերի համար մատչելի կալիում պարունակող միացություններ են։ Մեզ մոտ կիրառվում են կալիումի քլորիդ (50—60 տոկոս կալիումի օքսիդ), կալիմագնեզիում (19—27 տոկոս կալիումի օքսիդ), ծծմբաթթվային կալիում (45—52 տոկոս կալիումի օքսիդ)։ Կալիական պարարտանյութերն արտադրվում են քիմիական գործարաններում, կալիումի բնական հանքաքարերից։

Միկրոպարարտանյութերը քիմիական միացություններ են. դրանք պարունակում են բույսերի համար մատչելի բոր, մարգանեց, պղինձ, ցինկ, կոբալտ, մոլիբդեն, յոդ և քիմիական այլ տարրեր, որոնցից շատ քիչ է պահանջվում բույսերի համար։ Եթե մեկ հեկտար ցանքատարածությանը տալիս են մի քանի ցենտներ ազոտային, ֆոսֆորային և կալիական պարարտանյութեր, ապա միկրոպարարտանյութեր են տրվում մեկ կիլոգրամից էլ պակաս կամ մի քանի կիլոգրամ։ Միկրոպարարտանյութերն ստացվում են կամ սինթեզի միջոցով, կամ բնական հանքաքարերից, կամ արդյունաբերական մնացուկներից։ Միկրոպարարտանյութերն սկսել են օգտագործել համեմատաբար վերջերս։

Բարդ պարարտանյութերը քիմիական միացություններ են, որոնք միաժամանակ պարունակում են բույսի սնուցման համար անհրաժեշտ մի քանի տարրեր։ Արդյունաբերությունն արտադրում է հետևյալ բարդ (խտացված) պարարտանյութերը. ամոֆոս (որը պարունակում է 12 տոկոս ազոտ և 55—60 տոկոս ֆոսֆորի օքսիդ), դիամոֆոս (21 տոկոս ազոտ և 52 տոկոս ֆոսֆորի օքսիդ), ամոնիականացված սուպերֆոսֆատներ, կալիական սելիտրա, նիտրոֆոսկ։

Խառը պարարտանյութերը (տուկային խառնուրդները) ստանում են ազոտային, կալիական և ուրիշ պարարտանյութեր իրար խառնելու միջոցով, նպատակ ունենալով բարելավել դրանց քիմիական հատկությունները և բարձրացնել արդյունավետությունը։ Այդպիսի պարարտանյութերը թույլ են տալիս աշխատանքի խնայողություն ապահովել փոխադրումների, պահպանման և հողի պարարտացման գործում։ Սակայն հարկավոր է նկատի ունենալ, որ բոլոր պարարտանյութերը չէ, որ կարելի է խառնել միմյանց։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում արտադրվող մի շարք նյութեր ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում անասնաբուծության մեջ։ Խոշոր եղջերավոր անասունների կերաբաժնին շատ քիչ կարբամիդ (միզանյութ) ավելացնելով, կարելի է լրացնել սպիտակուցի պակասը։ Անասունների կերաբաժիններին օգտակար է ավելացնել նաև ֆոսֆորազերծված ֆոսֆատներ, վիտամիններ, անտիբիոտիկներ և քիմիական այլ նյութեր։





# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—ՀԿՊ Կենտկոմի հաշվետվությունը Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարին, զեկուցում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։

Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարի բանաձևը ՀԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 14-ի համարում։

Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարի պատգամավորների ելույթները, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 9—13-ի համարներում։

## 2. Քիմիայի նվաճումները՝ գյուղատնտեսությանը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսության արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 9-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 17-ի համարում։

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—Ճառ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։ Մեծ քիմիան ծառայեցնել գյուղատնտեսությանը, հոդված, տպագրված «Հայաստանի արդյունաբերությունը» տեխնիկատնտեսական բյուլետենի 1963 թվականի 11-րդ համարում։

## 3. Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության նոր վերելքի համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ.— Հայաստանի կոմպարտիայի գործունեությունը ժողովրդական տնտեսության հետագա զարգացման բնագավա-

ռում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ.—Ճառ ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 19-ի համարում։*

Հայաստանի կոմունիստների համագումարը, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 7-ի առաջնորդողը։*

## 4. Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1964—1965 թվականին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ.—Արդյունաբերության զարգացման գլխավոր ուղղությունները և կարևորագույն խնդիրները, *ՀԿՊ XXIII համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։*

Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ.—Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1964—1965 թվականների պետական պլանի մասին. *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի սեսիայում 1963 թվականի դեկտեմբերի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 28-ի համարում։*

Ա. Կ. ՇԵԿՈՅԱՆ.—1964—1965 թվականների պետական բյուջեի եկամուտները, *Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի վեցերորդ գումարման երկրորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 28-ի համարում։*

## 5. Գերազանց նախապատրաստվենք գարնանացանին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ.—Կատարելագործել գյուղատնտեսության ղեկավարումը, ավելի լավ օգտագործել հանքային պարարտանյութերը և ոռոգելի հողերը, *ՀԿՊ XXIII համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։*

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ.—Ռեսպուբլիկայի հետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու միջոցառումների մասին, *զեկուցում ՀԿՊ Կենտկոմի պլենումում 1963 թվականի նոյեմբերի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 30-ի համարում։*

Ա. ՎԱՐՈՍՅԱՆ.—Գյուղատնտեսության ինտենսիվացումը և բերքատվության բարձրացումը, *տպագրված «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարում։*

---

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

*ԱՊԱՐՏԵՅԴ— Բուրերեն բառ է, որը նշանակում է բաժանված բնակեցում։ Ապարտեիդը ռասայական սեգրեգացիայի սկզբունքն է, որի հիմքում ընկած է ազգային խտրականությունը։ Ապարտեիդի քաղաքականություն վարել, նշանակում է խտրականություն մտցնել ազգերի միջև, հատկապես սևամորթների և սպիտակամորթների միջև, հալածել սևամորթներին։ Օրինակ, Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայի 11 միլիոն աֆրիկյան բնակչությունը չի օգտվում նույնիսկ ամենատարրական քաղաքացիական և մարդկային իրավունքներից։ Այդ նույն ժամանակ այնտեղ 3 միլիոն եվրոպական ծագում ունեցող բնակիչներ հանդիսանում են տիրապետողներ։ Իհարկե, սպիտակ բնակչության մեջ ևս գոյություն ունի դասակարգային բաժանում, և ոչ բոլոր սպիտակամորթներն են աֆրիկացիներին թշնամի։*

*Ապարտեիդի քաղաքականությամբ Հարավ-Աֆրիկյան ռեսպուբլիկայի ռեակցիոն կառավարությունը ձգտում է ավելի ուժեղացնել ոչ եվրոպական ծագում ունեցող բնակչության շահագործումն ու թալանը, թույլ չտալ պրոգրեսիվ կազմակերպություններին միավորվել, որոնք պայքարում են երկրի դեմոկրատացման համար։ Ներկայումս Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայում աֆրիկացի բնակչությունը գտնվում է սարսափելի ծանր վիճակում։ Բավական է միայն ասել, որ ամբողջ վարելահողերի 13 տոկոսն է պատկանում աֆրիկացիներին։ Չնայած երկրի ամբողջ հարստությունն ստեղծվում է աֆրիկացիների ձեռքերով, բայց այդ հարստությունը՝ արդյունաբերական ձեռնարկությունները, բերքառատ հողատարածությունները, հանքավայրերը պատկանում են եվրոպացի բնակիչներին։ Աֆրիկացիները զրկված են քաղաքական իրավունքներից։ Նրանք իրավունք չունեն քաղաքական կազմակերպություններ ստեղծել և միավորվել պրոֆմիությունների մեջ։ Ամենափոքր կասկածանքի դեպքում աֆրիկացին ենթարկվում է բանտարկության։*

*Չնայած հարավ-աֆրիկյան ռասիստների կողմից հաստատված ծանր պայմաններին, երկրում աճում է ազգային-ազատագրական շարժումը։ Ակտիվորեն գործում է ընդհատակյա կոմունիստական պարտիան, որը ամենահնագույնն է աֆրիկյան ցամաքում։ Գործում են նաև բազմաթիվ պրոգրեսիվ կազմակերպություններ, որոնք կոմունիստական պարտիայի հետ միասին պայքարում են երկրում տիրապետող ռասայական խայտառակ ռեժիմը վերացնելու համար, ապարտեիդի քաղաքականությունը վերացնելու համար։*

*Ապարտեիդի քաղաքականության հարցը բազմիցս քննարկվել է ՄԱԿ-ի սեսիաներում։*

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 2
## 1964


ՎՖ 08042 Պատվեր 61 Տիրաժ 9467

Հանձնված է արտադրության 15/I 1964 թ.
Ստորագրված է տպագրության 23/I 1964 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆ արդյունաբերության
և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։